


# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ 11-ՐԴ ՀԱՎԱՔԸ

Հունիսի 20-ին Երևանի Լենինի անվան հրապարակում տեղի ունեցավ Հայաստանի պիոներների հանրապետական 11-րդ հավաքի հանդիսավոր բացումը։ Հավաքի աշխատանքները մի քանի օր տևեցին։ Այդ ընթացքում հավաքի պատվիրակները եղան պիոներական ճամբարներում, հանդիպումներ ունեցան գիտնականների, սովետական բանակի մարտիկների հետ, ծաղկեպսակներ դրեցին Անհայտ զինվորի հուշարձանին։

Հավաքը ցույց տվեց, որ մեր պիոներները հավատարիմ են Իլյիչի պատգամներին, որ նրանք սրբությամբ են կատարում կուսակցության և լենինյան կոմերիտմիության բոլոր առաջադրանքները։

Հավաքն ավարտվեց։ Իսկ պատանի լենինյաններին սպասում են նորանոր գործեր...

Անհայտ զինվորի հուշարձանի մոտ



Պիոներների շքերթը Լենինի անվան հրապարակում



# ԱՅԺՄ ԽՈՍՔԸ ՁԵՐՆ Է

ԲՈԼՈՐԻՆ, ԲՈԼՈՐԻՆ, ԲՈԼՈՐԻՆ, նրանց, ովքեր չեն եղել հավաքում:

Հուլիսի 3-ին, Լենինգրադում, պիոներների համամիութենական 4-րդ հավաքի փակման առթիվ կայացած հանդիսավոր տոդանի ժամանակ, պիոներական կազմակերպության գլխավոր դրոշի մոտ տրվեց պիոներական ջոկատների «ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ» համամիութենական երթի մեկնարկը՝ պիոներական կազմակերպության 50-ամյակի առթիվ:

Նախօրյակին յուրաքանչյուր պատվիրակություն քննարկեց երթի նախագիծը: Բոլոր պատվիրակները հավանություն տվեցին նրան: Նրանք այդպես էլ հայտարարեցին «ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԽՈՍՔ՝ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆԸ» դիմումում.

«Հիմա արդեն մեր խնդիրն է՝ գործի անցնել: Երթում ավելի են խտանում մեր շարքերը: Ամեն գործ, որին կոչում են մեզ կուսակցությունը, կոմերիտմիությունը, մենք կձգտենք կատարել»:

ԼՍԻ՛Ր, ՊԻՈՆԵ՛ՐԻԱ, «Միշտ պատրաստ» երթի պայմանները.

ԵՐԹԻ ԺԱՄԱՆԱԿԸ. 1970 թ. հուլիս—1972 թ. մայիս:

ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆԸ. Դեպի պիոներական կազմակերպության հոբելյանը, դեպի 5-րդ համամիութենական հավաքը:

ՆՊԱՏԱԿԸ. Հանդիսավոր խոստման և պատանի լենինյանների օրենքներին հավատարմության մարտական ստուգումը:

ԵՐԹԻ ԱԶԴԱԿՄՆՉԵՐԸ. «Քե՛զ, սովետակա՛ն հայրենիք, քե՛զ, հարազա՛տ կուսակցություն—մեր գիտելիքները, մեր աշխատանքը, մեր հավատարմությունն ու սերը»:

## ԼՍԻ՛Ր, ՊԻՈՆԵ՛ՐԻԱ, «ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ» ԵՐԹԻ ՊԱՅՄԱՆ՛ՆԵՐԸ

### Երթի գլխավոր ուղղությունները

ԵՐԹՈՒՂԻ՝ «ԳԻՏԵԼԻՔՆԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ». Հետևել երթուղուն, նշանակում է՝ ոչ միայն սովորել բարեխղճորեն և օգնել ուրիշներին, այլև գիտարշավի ելնել գիտելիքների աշխարհի անհուն տարածությունները, խաչաձևել սրերը մաթեմատիկայի, ֆիզիկայի, գրականության մրցույթներում, դրուժինաներում վառել գիտական օլիմպիադաների կրակը, բարեկամանալ գրքերի և ամսագրերի հետ: Կենսագործել ՀամԼԿԵՄ 16-րդ համագումարի հրահանգը. «Առանց գիտելիքների չկա կոմունիզմ»:

ԵՐԹՈՒՂԻ՝ «ԻՄ ՀԱՅՐԵՆԻՔԸ՝ ՍՍՀՄ». Հետևել երթուղուն, նշանակում է՝ լինել մեր երկրի մարտական և աշխատանքային փառքի հետախույզ (Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների կազմավորման 50-ամյակի առթիվ), լինել ընդերքի հետախույզ, հայրենի բնության և մշակույթի հուշարձանների

արթուն ժամացույց, ամրապնդել քաղաքի և գյուղի պիոներների բարեկամությունը:

ԵՐԹՈՒՂԻ «ՊԻՈՆԵՐԿԱՌՈՒՅՑ». Դա նշանակում է՝ բոլոր երեխաները վարպետներ դառնան համամիութենական «Պիոներկառույցում», գլխավոր խնդիր համարել Չուկոտկայում պիոներների պալատի կառուցումը: Իրագործել հարազատ դպրոցի գործկոմների, կոլեկտիվ և սովետական տնտեսությունների ու խատանքային հանձնարարությունները, ստեղծել ճագարների բազմացման պիոներական ֆերմաներ: Թող պիոներիայի քարտեզի վրա հոբելյանի առթիվ նշվեն պատանի լենինյանների բոլոր աշխատանքային նվերները:

ՀամԼԿԵՄ 16-րդ համագումարի հրահանգում ասված է. «Հայրենիքի հզորությունը սովետական ժողովուրդների բարեկամության մեջ է», «Կարմիր դրոշը խաղաղության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշն է»:

Իսկ չեն հետևյալ երթուղիների անվանումները.

ԵՐԹՈՒՂԻ «ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅՈՒՆ». Հետևել «Համերաշխություն» երթուղուն՝ նշանակում է՝ մասնակցել «Պատանեկությունը մերկացնում է իմպերիալիզմին» միջազգային գործողությանը, խաղաղության պահպանության համար և պատերազմների դեմ ուղղված միտինգներին և ցույցերին: Օգնել ազատության համար պայքարող ժողովուրդների երեխաներին, ստեղծել ինտերնացիոնալ բարեկամության ակումբներ: Արտասահմանյան բարեկամների հետ գրել «Թող լինի միշտ արևը» գիրքը:

«Հիշեցե՛ք,— ասված է կոմերիտական համագումարի հրահանգում,— պիոները պատրաստվում է դառնալ հայրենիքի պաշտպան»: Յուրաքանչյուր պատանի մարտիկ հնարամիտ է, տոկուն և համարձակ: Թո՛ղ «Փայլակի» պատանի մարտիկները գլխավորեն՝

«ՓԱՅԼԱԿ» ԵՐԹՈՒՂԻՆ. Թող օգնեն յուրաքանչյուր պիոների տիրապետել պատանի մարտիկների որևէ մասնագիտության, ստանան սպորտային կրծքանշաններից որևէ մեկը:

«ՄԻՇՏ ՊԱՏՐԱՍՏ» պիոներական երթն ուղղություն է վերցրել դեպի պիոներական կազմակերպության 50-ամյակը:

Պիոներական կազմակերպության պատմության, ավանդույթների ու գործերի ուսումնասիրությունը ոչ միայն կարմիր հետախույզների խնդիրն է: Յուրաքանչյուր ջոկատ, յուրաքանչյուր պիոներ քայլում է

«ՀԱՎԱՍԱՐՎԵԼ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԴՐՈՇՆԵՐԻՆ» երթուղով: Թող այս երթուղու ընթացքում տող առ տող, էջ առ էջ հարստանա Համամիութենական պիոներական կազմակերպության փառապանծ տարեգրությունը:

ԵՎ ՄԻ ԵՐԹՈՒՂԻ ԵՎՍ՝ «ԱՍՏՂԻԿ»: Հոգատարությունը հոկտեմբերիկների և փոքրերի նկատմամբ՝ պիոներական կարևոր հանձնարարություն է:

Յուրաքանչյուր ջոկատ և դրուժինա ձգտում է դառնալ ԱՌԱՋԱՏԱՐ (?)

Երթի վերջում նրանք զեկույց կտան կոմերիտմիությանն այն մասին, թե ինչպես են կատարել նրա հրահանգը:

*Երթի աչքնայինները կստանան հուշանշան՝ դրուժինայի կամ ջոկատի դրոշի համար պատվո ժապավեն: Ամենաակտիվ պիոներները կընտրվեն պիոներների համամիութենական 5-րդ հավաքի պատվիրակներ:*

Այժմ խոսքը ձերն է:

ԹՈՂ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԴՐՈՒԺԻՆԱ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՋՈԿԱՏ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՊԻՈՆԵՐ ԻՐ ՏԵՂԸ ԳՏՆԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՇԱՐՔՈՒՄ:

ԵՐԹԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼԸ ԹՈՂ ՕԳՆԻ ՁԵԶ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԼԿԵՄ 16-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՀԱՆԳԸ ԵՎ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵԼՈՒ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ 50-ԱՄՅԱԿԸ:

Կաչամակով եղբայրները այնքան նման էին իրար, որ 7-րդ «բ» դասարանցիները չէին կարողանում տարբերել, թե որն է Բոյանչոն, որը՝ Ստոյանչոն: Երկուսի աչքերն էլ՝ բաց գույնի ու ճլպստան, մազերը՝ հարթ ու շեկ, սանրվածքը՝ միևնույն ձևի: Հագնվում էին միատեսակ ու գրում միանման գրիչներով: Ասում են, մանկությունից միշտ նույն իրերն են գնել նրանց համար, որ մեկը մյուսին նայելով չտզզա:

Նույնիսկ բակում ֆուտբոլ խաղալիս չէին կարողանում նրանց իրարից ջոկել: Երկուսն էլ նույն եռանդով էին խաղում և գնդակի ետևից ընկած, տեղերը փոխում էին, ու խաղընկերները սկսում էին շշփոթել, այնպես որ երբ հարկ էր լինում որևէ մեկի անունը տալ, չսխալվելու համար երկուսի անունները իրար էին կցում ու գոռում.

— Ա՛յս կողմ տուր, Ստոյա՛նչո-Բոյա՛նչո:

— Ինչո՞ւ գոնե տարբեր շորեր չեք հագնում,— երբեմն հարցնում էին երկվորյակներին:— Ասենք, մեկդ՝ կապույտ, մյուսդ՝ կարմիր:

Նրանք ուսերն էին թոթվում, ժպտում ու ոչինչ չէին ասում: Կամ կատակի էին տալիս.

— Այսպես ավելի լավ է, ուսուցիչները մեզ չեն տարբերի:

Կաչամակովները միշտ «գերազանց» էին ստանում:

Բայց ահա մի անգամ աշխարհագրության ուսուցիչը Ստոյանչոյի հետ միասին քարտեզի մոտ կանչեց Անգել Բուրմային: Ինչպես միշտ, այս անգամ էլ Ստոյանչոն առանց կանգ առնելու պատասխանեց բոլոր հարցերին, իսկ Բուրման սկսեց կմկմալ, ինչ-որ բան քրթմնջալ և դեսուդեն նայել, սպասելով, որ մեկնումեկը հուշի:

— Դու դարձյա՛լ դասդ չես սովորել, Ա՛նգել,— ասաց ուսուցիչը:— Դարձյալ ամբողջ օրը գնդակ ես խաղացել: Օրինակ վերցրու Ստոյանչո Կաչամակովի՛ց: Ե՛վ նա, և՛ նրա եղբայր Բոյանչոն միշտ «գերազանց» են ստանում: Վատ չէր լինի, որ նրա՛նց հետևեիր:

Անգել Բուրման ոչինչ չպատասխանեց: Բայց զանգից հետո, երբ ուսուցիչը գնում էր, արագ հասավ նրան միջանցքում և ասաց.

— Ընկե՛ր Կուրտև, ուզում եմ ձեզ մի բան ասել:

Ուսուցիչը ծիծաղեց.

— Ես ինքս էլ, ախր, ուզում էի, որ դու մի բան ասեիր, դրա համար էլ քեզ կես ժամ պահեցի գրատախտակի մոտ: Բայց դու լռում ու լռում էիր: Իսկ հիմա հանկարծ ուզեցիր մի բա՞ն ասել: Դե, լավ, լսում եմ:

— Ես չէի ուզենա...— մրթմրթաց Բուրման:—



# Երկվորյակները





ՏՈՆԻՉ (բուլղար գրող)

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Բայց քանի որ ինձ համար օրինակ եք բերում երկվորյակներին, ապա ես... ես կասեմ:

— Իսկ ի՞նչ են արել այդ երկվորյակները:

— Նրանք... նրանք այդպես լավ են երևում, որովհետև խորամանկում են:

— Իսկ ինչպե՞ս են խորամանկում.— հետաքրքրվեց ուսուցիչը և կանգ առավ:

— Ահա՛ թե ինչպես... Այսօր, օրինակ, ունենք երկու դժվար դաս՝ աշխարհագրություն և ֆիզիկա: Ստոյանչոն սովորում է միայն աշխարհագրությունը, իսկ Բոյանչոն՝ ֆիզիկան: Եվ որին էլ որ կանչեք, գրատախտակի մոտ գնալու է Ստոյանչոն: Չէ՞ որ մայրն անգամ նրանց չի տարբերում:

— Լա՜վ, իսկ եթե ես հետո հարցնեմ մյուսի՞ն:

— Դարձյալ Ստոյանչոն դուրս կգա ու դարձյալ նա կպատասխանի: Իսկ ֆիզիկայի դասին կպատասխանի Բոյանչոն: Նրանցից որին էլ կանչեն՝ նա դուրս կգա:

— Տես հա՜,— ասաց ուսուցիչը.— կստուգենք ասածդ:— Եվ դավադրաբար ավելացրեց.— Միայն թե քեզանից ոչ մի խոսք դուրս չգա: Իսկ ինքդ դասերդ սովորիր, քանի որ երկվորյակ եղբայր չունես:

Երեք օր հետո 7-րդ «բ»-ում նորից աշխարհագրություն էր: Ուսուցիչը դասարան մտավ: Նրա հայացքը պտտվեց ու կանգ առավ լուսամուտի մոտի երրորդ նստարանի վրա, ուր նստած էին Բոյանչոն ու Ստոյանչոն:

—Ստոյա՛նչո Կաչամակով, գրատախտակի մո՛տ,— ասաց նա:

Երկվորյակներից մեկը ճարպիկ ու վստահ շարժումով վեր կացավ և գնաց դեպի գրատախտակը:

— Ստոյա՛նչո, կանգնիր այստե՛ղ՝ լուսամուտի մոտ: Այդպես: Իսկ հիմա թող գա Բոյանչոն:

Դուրս եկավ երկրորդ եղբայրը:

— Դո՛ւ, Բոյա՛նչո, դռա՛ն կողմը գնա:

Երկվորյակները տարակուսանքով իրար նայեցին, բայց կատարեցին ուսուցչի պահանջը:

«Ա՛յ, հիմա ձեզ ցո՛ւյց կտամ, խորամա՜նկ աղվեսներ,— մտքում ասում էր Անգել Բուրման:— Բավական է, որ ձեզ օրինակ բերեն: Հիմա կտեսնե՜ք»:

Ուսուցիչը կանգնեց երկու եղբայրների միջև այնպես, որ մեկը նրա աջ կողմն ընկավ, մյուսը՝ ձախ, և սկսեց հարցեր տեղալ թե՛ մեկին, թե՛ մյուսին:

Ստոյանչոն ու Բոյանչոն պատասխանում էին վարժ ու դիպուկ, և նրանց պատասխանները նման էին մեկը մյուսին, ինչպես երկվորյակներ:

Ուսուցիչը, հարցուփորձից հոգնած, շոյեց Ստոյանչոյի ու Բոյանչոյի միանման շեկլիկ գլուխները և ասաց.

—Նստե՛ք ձեր տեղերը, ձեզ «հինգի» փոխարեն «տաս» եմ նշանակում, որովհետև մեկ «հինգը» քիչ է թվում ինձ...

«Անպիտաննե՜ր,— մտքում ասում էր Անգելը,— ձեր պատճառով ե՛ս սևերես եղա...»

Այդ պահին ականջին հասավ ուսուցչի ձայնը.

— Անգել Բո՛ւրմա:

— Ե՞ս:

— Դո՛ւ, դո՛ւ,— կրկնեց ուսուցիչը,— գրատախտակի մո՛տ: Չէ՞ որ «երկուսդ» պետք է վերացնես:

— Ի՞նչ «երկուս»,— կեղծ զարմացավ Անգելը: Մի քիչ լռեց, ապա քրթմնջաց.— Ճիշտն ասած, ես այսօր էլ չեմ սովորել...

— Դե որ այդպես է, նստի՛ր: Քեզ մի հատ էլ «երկուս» եմ դնում:— Եվ մատյանում գրանցում կատարելիս, ժպտալով ավելացրեց.— Այժմ երկու հատ «երկուս» ունեցար, այսինքն՝ երկվորյակներ:

Թարգմ. ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆԻ



# ՍՏԵՓԱՆ ԶՈՐՅԱՆ

## ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



*Լրացավ սովետահայ ականավոր գրող Ստեփան Զորյանի ծննդյան 80-ամյակը։ Ստեփան Զորյանը սովետահայ արձակի հիմնադիրներից էր, և այն, ինչ նա արել է մեր գրականության զարգացման համար, նշանակալից է և անփոխարինելի։ Նրա «Ցանկապատը» և «Պատերազմ» պատմվածքաշարերը, «Խնձորի այգին», «Գրադարանի աղջիկը» վիպակները, «Պապ թագավոր» պատմավեպը հայ գրականության լավագույն նմուշներից են։*

*Ստեփան Զորյանը հաճույքով էր գրում նաև երեխաների համար։ Ո՞վ չի կարդացել նրա հրաշալի հեքիաթները, «Խուման Արջուն», «Մի Սեթոն» և մյուս պատմվածքները։ Այդ ստեղծագործությունները եղել ու մնում են պատանի ընթերցողների սիրելի գրքերը։*

*Ստորև տպագրվող «Անգրագետը» պատմվածքը Ստեփան Զորյանի անտիպ գործերից է։ Սովետական իշխանության առաջին տարիներն են, դեռևս չեն վերացվել հին մնացուկները։ Ճարպիկ երիտասարդը փորձում է անգրագիտության քողի տակ կոծկել իր արարքները։ Պատմվածքում և՛ ափսոսանք կա, և՛ դատապարտող երգիծանք։*

# ԱՆԳՐԱԳԵՏԸ

Գիշեր էր, երբ վագոն մտա, և երբ մոտեցա իմ կուպեին՝ այնտեղ մեծ աղմուկ էր: Մինչև իրերս տեղավորեցի՝ պարզվեց, որ մեկը— անորոշ տարիքի մի երիտասարդ— նստել է առանց տոմսի: Կանդուկտորը պահանջում էր, որ նա անմիջապես իջնի և տոմս գընի: Երիտասարդն առարկում էր, թե ուշ է, չի հասցնի, գնացքը հիմա կշարժվի, տոմսը կառնի հաջորդ կայարանում, մյուս կողմից՝ «ապրանքը կգողանան»...

«Ապրանքը» ասածը մի հին ճամպրուկ էր, որ նա սեղմել էր երկու ոտների արանքում այնպես, թվում էր վախենում է ձեռքից խլեն: Ինքը երիտասարդն էլ այնպիսի արտաքին ուներ, որ ինչ լինելն ու զբաղումը դժվար էր որոշել — գեղացի՞ էր, քաղաքի հիմնարկի տեխնիկական աշխատող, թե... Համենայն դեպս ջահել մարդ էր, հազիվ երեսուն տարեկան, շեկ էլ բեղեր ուներ գարու հասկերի նման:

— Բլեթ չունես՝ շտրաֆափատ կենեմ,— ասում էր կանդուկտորը զայրացած:— Պռավիլը չիդե՞ս կարդալ՛...

— Ջանը՛մ, ես անգրագետ եմ, էդքան որտեղի՞ց հասկանամ,— ասում էր երիտասարդը խեղճացած:— Տոմս է հասարակ, հոգի հո չի, կառնեմ էլի՛...

Ուղևորներից մեկը՝ եղջերյա ակնոցով, լեցուն դեմքով... մի խոսքով ազդու արտաքինով մի մարդ, միջամտեց, և կանդուկտորը համաձայնեց, որ երիտասարդը հաջորդ կայարանում կիջնի և տոմս կառնի:

— Կառնե՛մ, կառնե՛մ,— կրկնեց նա, և երբ կանդուկտորը լապտերը ձեռին հեռացավ, նա մի պապիրոս հանեց և սկսեց հուզված ծխել:

Կծու հոտը բռնեց կուպեն:

Վերև պառկած մի ուղևոր՝ հիսունի մոտ մի ճաղատ՝ հաշվապահի արտաքինով, գլուխը իջեցնելով, խեթեց նրան.

— Ընկե՛ր, այստեղ ծխել չի կարելի:

— Ինչո՞ւ,— հարցրեց մարդը զարմացած:

Եվ քանի որ նրա տոնի մեջ կար մի փոքր հեգնանք ու արհամարհանք, ճաղատը ձայնը բարձրացրեց.

— Ինչո՞ւ... Նրա համար, որ այս վագոնը ծխողների վագոն չի: Եթե ծխել էիր ուզում՝ պիտի գնայիր ուրիշ վագոն. նստելիս պիտի կարդայիր, թե ինչ վագոն ես նստում:

— Կարդալ... Ախր ես անգրագետ մարդ ե՛մ, ախպե՛ր ջան, գրի սևն ու սպիտակը չեմ ջոկում՝ ո՞նց կարդամ... Ես էլ որ ծխում եմ՝ դարդից եմ ծխում, ուրախությունից չիմանաս...

— Ինչո՞ւ, գործ, աշխատանք չունե՞ս,— հոգատարությամբ հետաքրքրվեց եղջերյա ակնոցով ուղևորը:

— Ինչպե՞ս ունենամ, ախպե՛ր ջան, երբ անգրագետ եմ:

— Անգրագետ.— և ճաղատը նորից կախվեց վերև-

վից:— Ի՛նչ ես կրկնում «անգրագետ» եմ: Ինչո՞ւ ժամանակին գրագիտություն չես սովորել:

— Գրագիտություն... Հը՛մ,— և երիտասարդը քըմծիծաղով տրորեց պապիրոսը:— Հին ռեժիմի օրով ո՞վ փող ուներ, որ ուսում առներ: Հերս փող ունենար, հարուստ լիներ, իհարկե, ուսումի կտար...

— Է՛, հիմա էլ ուշ չի,— շարունակեց իր հոգատարությունը ակնոցավորը:— Ջահել մարդ ես. գնա լիկկայան, գնա երեկոյան դպրոց և դարձիր գրագետ...

Երիտասարդը քմծիծաղեց.

— Ինձ նմանները էլ որ գրագետ դառնան՝ բա ծառայողները ի՛նչ անեն:

Ու գլխով ցույց տվեց վերև պառկածին:

— Քու գրագիտությունն ի՞նչ կապ ունի ծառայողների հետ, ա՛յ տղա,— բռնկվեց հաշվապահի նման ուղևորը՝ ճաղատը նորից ցույց տալով:— Դու որ գըրագետ լինես՝ ծառայողի գործն ավելի կհեշտանա: Կիմանաս՝ ո՛ր վագոնը նստես, որպեսզի մարդկանց ծխով չխեղդես:

Մինչ նրանք խոսում էին, ես· զրույցով ու գնացքի շարժումով օրորված. ննջեցի և չգիտեմ որքա՞ն էի քնել՝ մի ժամ, երկու ժամ· մեկ էլ զարթնեցի մի նոր աղմուկից. որ գալիս էր այս անգամ վագոնի միջանցքից:

Ինչ-որ մարդիկ բարձրաձայն հանդիմանում էին մեկին. և նրանց ասածի մեջ շարունակ այս խոսքերն էին կրկնվում.

— Ամո՛թ քեզ, ամո՛թ...

— Ինչպե՜ս չես ամաչում...

— Անհագին մարդ ես...

Խոսում էին. զարմանում և երբեմն ճչում բարկացած, և այդ ձայների վրա շարունակ քնաթաթախ մարդիկ էին դուրս գալիս կուպեներից և գնում դեպի աղմուկը: Հարևաններս նույնպես չկային. նրանք էլ, ըստ երևույթին. գնացել էին այնտեղ:

Ընդհանուր այդ աղմուկով հետաքրքրված՝ ես նույնպես դուրս ելա կուպեից և մոտեցա խմբված մարդկանց:

Զայրացած բազմության մեջ կանգնած էր մեր կուպեի երիտասարդը և հանդարտ, բայց գրեթե զարմացած շուրջն էր նայում տարակուսյով· թե ինչու մարդիկ այդպես գազազել են իր վրա:

Իսկ կանդուկտորը կրկնում էր.

— Բա չե՞ս ամչնա, ա՛յ օղուլ: Առանց տոմսի նըստար, հիմի էլ, տոմս առնելու փոխարեն. ուրիշի չեմոդանը վերցնես· իջնե՞ս կը... Ամո՛թ քեզի...

— Դե լա՛վ, լա՛վ,— դժգոհում էր երիտասարդը: — Ի՛նչ ես ավել-պակաս խոսում... Անգրագետ մարդ եմ. ես ինչ իմանամ իմ չեմոդանը ո՛րն է. ուրիշինը՝ ո՛րը... Բան է, պատահել է՝ էլ ի՞նչ ես գոռում... Լսողըն էլ կկարծի, թե գող ես բռնել...

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ՆՈՐ ԸՆԿԵՐԸ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Նոր բնակարանը նոր փողոցի վրա կառուցված մի մեծ շենքում էր: Բոլոր շենքերն այստեղ նոր էին, մեծ և գեղեցիկ:

Երբ իրերը տեղափոխված, տեղավորված էին, Կարենը շենքի բակին նայող պատշգամբը ելավ և սկսեց դիտել, թե ինչպես էին մյուս բնակիչները տեղավորվում իրենց բնակարաններում: Նա նկատեց, որ իրենց շենքի առաջին հարկում իր տարիքի մի տղա մատիտով կեղտոտում է մաքուր պատը:

Կարենը հոնքերը կիտեց: Նա արագ ներքև իջավ, վազեց տղայի մոտ և գոռաց.

— Ի՞նչ ես անում, դե՛ն գցիր մատիտը: Դեռ չես տեղավորվել, արդեն պատերը կեղտոտում ես:

— Դու ո՞վ ես, որ ինձ սովորեցնում ես,—շփոթվեց, անհարմար զգաց տղան, բայց համառեց, կարծես ուզում էր դադարեցնել ու չկարողացավ:

Կարենը վրա հասավ, խլեց նրա ձեռքից մատիտը և շպրտեց մի կողմ:

— Գնա՛, թե չէ հիմի...— տղան ձեռքը բարձրացրեց, բայց երբ Կարենը բռնեց նրա դաստակը, տղան զգաց, որ հակառակորդը ուժեղ է իրենից, և ետ քաշվեց:

Այսպե՛ս տեղի ունեցավ երկու նոր հարևանների՝ Կարենի և Աշոտի ծանոթությունը:

Հաջորդ օրը, երկուշաբթի առավոտյան, Կարենին դպրոցում շրջապատեցին ընկերները և սկսեցին հարցուփորձ անել.

— Ինչպիսի՞ն է ձեր նոր բնակարանը... Քեզ հասակակից տղաներ կա՞ն:

Կարենը պատմեց Աշոտի մասին:

— Տղանե՛ր, եկեք նրան մի լավ դաս տանք,— առաջարկեց կովարար Սամվելը:

— Տա՛նք,— ձայնակցեց Լևոնը:

— Լավ,—համաձայնեց Կարենը,—այսպես պայմանավորվենք. վաղը ժամը երեքին եկեք ինձ մոտ,

---



## ՀՐԱԺԵՇՏ ՃԱՄԲԱՐԻՆ

ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ

Մնաս բարո՛վ,
Մնաս բարո՛վ,
Ամռան ճամբա՛ր,
Մենք բռնել ենք հիմա
դպրոց տանող ճամփան:
Տաք թմբուկի երգը ուրախ,
Որ հնչում էր լեռան ծոցում,
Հիմա եկել,
Զանգից առաջ,
Մեր սրտերն է ալեկոծում:
Իրիկնային խարույկները,
Որ վառեցինք սարի վրա,
Նկար դարձած՝
Մեզ հետ մտնում են դասարան:
Մնաս բարո՛վ,
Մնաս բարո՛վ,
Դու մեր ճամբա՛ր,
Մենք բռնել ենք
Հիմա դպրոց տանող ճամփան:

## ԱՇՆԱՆ ԱՌԱՎՈՏՈՒՄ

ՎԻԼԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ



Ծեգը ծաղկեց բարի,
Սեգը շաղին տվեց,
Թղկին շրշաց հուշիկ,
Առուն տաղին տվեց:

Հետո թռավ կկուն,
Ծլրտան իջավ թփին,
Ապա հովը երգեց
Իր երգերը նրբին:

Սունկը շողիկ տեսավ,
Երամն օդում շարվեց,
Իսկ երբ սուլեց քամին,
Ծառը ծառին փարվեց:

Մի հավք տվեց թևին,
Բռնեց ճամփան սարի,
Անտառն ուրախ էր շատ,
Օրը շատ էր բարի:

ես նրան բակ կկանչեմ և... մնացածը հետո կտես-նենք...

Մյուս օրը Կարենը տրամվայով տուն էր վերա-դառնում: Տրամվայը սլանում էր արևոտ, գարնա-նային փողոցով: Ծառերի ուղիղ շարքերը զուգված էին նորաբողբոջ տերևներով, իսկ պարտեզներում ծաղկում էին ծաղիկները: Հանկարծ Կարենը տե-սավ Աշոտին. նա հանգիստ և հավասար քայլերով գնում էր մայթն ի վեր:

— Ինչո՞ւ է նա այդքան երկար ճանապարհը ոտ-քով կտրում, նրա դպրոցը հեռու է իմից,— մտածեց Կարենը և էլ չհասկացավ, թե ինչու ընթացքի ժա-մանակ թռավ տրամվայից: Նա չկարողանալով իրեն պահել, վայր ընկավ: Վնասվածք չստացավ, բայց պայուսակից թափվեցին գրքերն ու տետրակ-ները: Նա մինչև ոտքի կկանգներ, մեկն օգնության հասավ, սկսեց հավաքել մայթի վրա շաղ եկած նրա գրքերն ու տետրերը: Աշոտը ճանաչեց իր նոր հա-րևանին:

— Բարև՛, հերո՛ս,— կիսակատակ ասաց Աշո-տը,— էժան պրծար... Ուրիշին խրատում ես, իսկ ինքդ... ա՛ռ, վերցրո՛ւ,— նրան մեկնեց պայուսակը: Կարենը շփոթվեց. իսկապես որ երեկ ինքն էր նրան խրատում, այսօր նա՝ իրեն:

— Ինչո՞ւ ես ոտքով գնում,— հարցրեց Կարենը հուզմունքից խռպոտած ձայնով:

— Գրպանիս անցքի պատճառով:

— Ի՞նչ անցք,— չհասկացավ Կարենը:

— Գրպանի սովորական անցք, որտեղից թափ-վել է մանր դրամը,— բացատրեց Աշոտը:

— Ես ունեմ, գնանք նստենք...

— Չարժի... Մի կանգառ մնաց, քայլենք ոտքով:

Կողք-կողքի լուռ շարունակեցին ճանապարհը:

— Մեր փողոցը քաղաքի ամենագեղեցիկ փո-ղոցներից մեկը կլինի,— լռությունը խզեց Աշոտը:

— Գեղեցիկը՝ գեղեցիկ կլինի... բայց մինչև կարգի բերեն, մինչև ծառ, ծաղիկ...

— Այդ բոլորը կլինի... ը՞ը... հարևա՛ն...

— Իմ անունը Կարեն է:

— Իսկ իմը Աշոտ է:

Նրանք մեծավարի ձեռք տվին իրար:

Նշանակված օրը Սամվելն ու Լևոնը ճիշտ ժա-մանակին եկան Կարենի մոտ:

— Ո՞ւր է հարևանդ, չի երևում,— պատշգամբ դուրս գալով, աքլորացած ասաց Սամվելը,— շուտ գտիր բե՛ր նրան, ձեռքերս քոր են գալիս...

— Ահա՛, նա գալիս է մեր կողմը:

Աշոտը հանգիստ բարձրանում էր սանդուղքնե-րով:

— Ծանոթացե՛ք, տղանե՛ր, սա իմ նոր ընկերն է,— ասաց Կարենը, երբ Աշոտը մոտեցավ իրենց:

## Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը

# ԱՔԻՍ ԵՎ ԽԱՅՏԱՔԻՍ

Սրանք երկուսն էլ պատկանում են կզաքիսների ընտանիքին:

Աքիսը այդ ընտանիքի ամենա-փոքր ներկայացուցիչն է, նա մարմնով առնետից էլ փոքր է: Բայց ամենից քաջն է ու անվեհե-րը: Շատ անգամ եմ հանդիպել այդ կենդանուն և միշտ անվախու-թյուն եմ նկատել նրա արարքի և համարձակ հայացքի մեջ: Երբ փոքր էի, աչքիս առաջ ճուտ փախցրեց մեր գոմի առաջից: Որ-սորդ Ավագ Ղազարյանի մոտից բերանն առած փախցրել էր իր վիրավոր ընկերոջը: Կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը մի անգամ ինձ պատմեց, թե ինչպես Աշտարակի գյուղի մոտ որս անելիս, վիրավոր լքիսը փախչելու փոխարեն ետ է դառնում, զայրագին ցատկում խփվում նրա ոտքին ու քիչ է մը-նում դեմքը ծվատի...

Այդ դեռ՝ ամենազոր մարդու նկատմամբ: Իսկ թույլ կենդանի-ներին իսկի բանի տեղ չի դնում. հարձակվում է նապաստակի վրա, խեղդում ուտում է իրենից խոշոր առնետներին, իսկ մկներին հո «հնձում» է: Այն վայրերում, ուր շատ մուկ կա (օր. Հրազդանի շրջանում), հաշվել են, որ աքի-սը տարեկան խեղդում է 2—3 հազար մուկ: Ասում ենք՝ «խեղ-դում է», որովհետև այդքանն ուտել չի լինի, ուստի խեղդում



ԽԱՅՏԱՔԻՍ

անցնում է կամ ուտում է միայն նրանց ուղեղները: Մի անգամ մի դեզի տակ 450 մուկ գտան, որոնց բոլորի ուղեղներն էլ դատարկ-ված էին...

Ահա ինչպիսի արյունարբուն է



ԽԱՅՏԱՔԻՍ

աքիսը: Եվ որովհետև նրա հիմնական որսը մկնակերպ կրծողներն են, ուստի մեր երկրում աքիսներ ավելի շատ հանդիպում են այն շրջաններում, ուր մուկ շատ կա: Բայց և այնպես մուկ կա մեր հանրապետության ամենացածրադիր վայրից մինչև Արագածի ձյան սահմանները, ուստի աքիսին կարելի է հանդիպել ամենուրեք՝ և՛ հացահատիկի դաշտերում, և՛ մարգագետիններում, և՛ անտառային բացատներում, և՛ Աշտարակի ու Աբովյանի քարքարուտներում ու «ղոերում»։

Ի՞նչ տեսք ունի աքիսը: Ա՛յն, ինչ տեսնում եք նկարում. պոչը ո՛չ երկար է, ո՛չ թավամազ: Մարմինը, ընդհակառակը, բարակ է ու երկար՝ կարծես հատուկ հարմարեցված իրենից մկների բները խցկվելու համար: Այդ նպատակին ծառայում է նաև նրա զարմանալի ճկունությունը: Գույնը թիկունքի կողմից դեղնադարչնավուն է, իսկ փորի ու դնչի տակը՝ սպիտակաչալ: Դա ամառը: Ձմեռը մոտենալիս սպիտակը հետզհետե բարձրանում, տարածվում է նաև կողերի վրա, իսկ դեկտեմբեր և հունվար ամիսներին ես ձյունաթույր ճերմակ աքիսների եմ հանդիպել Սադարակի հանդում և Վեդու Չիման գյուղի մոտ: Այս օրինակները հատկապես մեջ եմ բերում, հերքելու նպատակով կենդանաբանական գրականության մեջ տիրող այն կարծիքը, թե Անդրկովկասում «աքիսների ամառային և ձմեռային մազի գույնը միանման է»: Այսպիսով, Հայաստանի բնության մեջ աքիսը միակ կենդանին է, որ Հյուսիսի կենդանիների նման ձմռանը ճերմակ մուշտակ է հագնում:

Աքիսը գարնանը ծնում է 3—9 ձագ:

*Խայտաքիսը* եռապատիկ խոշոր է աքիսից: Սրա պոչը ավելի երկար է ու «փրչոտ», թավամազ է նաև մարմինը, իսկ ականջները մեծ են: Դարչնաթխավուն մարմնի վրա բազմաթիվ ճերմակ ու դեղնավուն խալեր կան, որի համար այդ կենդանուն անվանում են նաև բծավոր ժանտաքիս: Շատ տարօրինակ դեմք ունի, որի վրա հերթով, հարկ առ հարկ իրար հաջորդում են շագանակագույն ու ճերմակ շերտեր:

Բնավորությունը գրեթե նույնն է, ինչ աքիսինը. ճարպիկ որսորդ է և ամենից շատ կոտորածներ է սարքում մկնակերպ կրծողների շրջանում. ճագարամկները, գետնասկյուռները, դաշտամկները, ավազամկները, համստերը «օր ու արև չունեն» խայտաքիսի ձեռ-





*ԱՔԻՍԸ՝ ՄԿՆԵՐԻ ՍԱՐՍԱՓԸ*

քից: Ափսոս, այդ օգտակար գազանիկից քիչ կա մեր երկրում. նա սիրում է ջրազուրկ տափաստաններ, անտառային շրջաններում չի բնակվում և սահմանափակվում է միայն այն շրջաններով, ուր տարածված է իր սիրած որսը՝ գետնասկյուռը (Ախուրյան, Կիրովական, Ղուկասյան, Ապարան, Թալին և այլն): Սրանք լեռնային շրջաններ են, ուր հիմնական բնակություն է հաստատել խայտաքիսը: Բայց հնում միջինասիական տափաստաններից երբ մուտք գործեց Հայաստան, սկզբում տեղավորվեց Արաքսի հովտում, ուր և գտնված են 2000 տարվա հնություն ունեցող նրա ոսկորները: Բայց որովհետև իր սիրած կերը լեռնային տափաստաններում էր, Արաքսն ի վեր տարածվելով՝ հասավ այն վայրերը, որոնք թվեցինք վերևում:

Մայր խայտաքիսը հղի է մընում 50—60 օր և ապրիլ—մայիս ամիսներին ծնում է 4—8 ձագ: Ամառը ձագերն արդեն մի-մի գիշատիչներ են և խեղդում են բոլոր այն շնչավորներին, որոնց ուժերը պատում է:

Հաջորդ անգամ՝ *գորշուկի* մասին:

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

# ԲՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՄԵՆՔ

Մեր լեռներն ու անտառները, բերքառատ հովիտները, պուրակներն ու այգիները, հազարավոր ծաղիկներով զարդարված ալպյան արոտները, մեր գահավիժող գետերն ու ջրվեժները, ջինջ ու կապույտ լեռնային լճերը, ալևոր ձյունապատ լեռնագագաթները, հանքային ջրերը, մեր երկրի հարուստ ընդերքը — այս բոլորը բնության պարգևներն են, մեր երկրի պարծանքն ու գեղեցկությունը: Նրանք մարդուն անսահման հաճույք են պատճառում, ստեղծագործության աղբյուր հանդիսանում, առողջացնում մեր շրջապատի կլիման, կերակրում են ու հագցնում մարդուն, ժողովրդի նյութական բարեկեցության հիմքը կազմում, առանց որի ընդհանրապես հնարավոր չի մարդու գոյությունը:

Մեր երկրի ժողովրդական տնտեսությունը յուրաքանչյուր տարի պահանջում է հսկայական քանակությամբ փայտ ու երկաթ, հաց և միս, բուրդ ու կաշի, հող և ջուր և այլ բնական հարստություններ, որ տալիս է մեզ մեր բնությունը: Բայց բնության այդ հարստությունները անսահման չեն: Նրանց միակողմանի օգտագործումը, առանց նրանց պաշարների վերարտադրման, բերում է այն վիճակին, որ մեր բնական հարստությունները աստիճանաբար նվազում են, սրվում է բնության և մարդկային հասարակության փոխհարաբերությունը: Ահա և հրապարակ է գալիս ողջ մարդկությանը հուզող ժամանակակից ամենասուր պրոբլեմը, որը կոչվում է բնության պահպանություն: Այդ պրոբլեմը այսօր լուրջ կերպով անհանգստացնում է բոլոր ազգերին, ժողովուրդներին ու նրանց պետական մարմիններին: Պահպանել հայրենի երկրի բնությունը. ահա մի կոչ, որ մենք այսօր լսում ենք ամենուրեք, պահպանել մեր անտառները, բերքատու հողերը, ջրերը, բնության զարդ հանդիսացող գազաններին ու թռչուններին, մաքուր օդը, հանքային հարստությունները, առողջարանների պաշարները, որոնք վտանգի տակ են:

Այս չի նշանակում, թե չպետք է կտրել անտառը, չպետք է վարել հողը, չպետք է օգտագործել ջրերը, չորսալ օգտակար գազաններին, թռչուններին, գետերի ու լճերի մեջ աճող ձկներին, այլ՝ բնության տված այդ բարիքները օգտագործել այնպես, որ այդ օգտագործումից հետո բնությունը ոչ թե աղքատանա, այլ ավելի նոխ ու հարուստ դառնա: Ահա թե ինչու բնության պահպանության գաղափարը պահանջում է, բնական հարստությունների օգտագործման հետ միասին, ապահովել նրանց վերարտադրումը, բազմացումը: Ուստի մեր նշանաբանը պետք է լինի՝ երեք ծառ տնկել, նոր ապա մեկը կտրել, տաս կաքավ աճեցնել, նոր երեքը որսալ, հինգ այծյամ կամ եղջերու բուծել, խնամել, մեծացնել, նոր երկուսը որսալ: Բնության պահպանությունը պետական ու հասարակական միջոցառումների մի ամբողջ սիստեմ է, որի նպատակն է բնության հարստությունները օգտագործել խելացի, խնայողաբար, միաժամանակ ապահովելով նրանց վերարտադրումը այնպես, որ հետագա սերունդներին թողնել կարողանանք ավելի հարուստ հող և ջուր, անտառ ու այգի, գազան ու թռչուն և այլն:

Դժբախտաբար այսօր համարյա աշխարհիս բոլոր երկրներում, այդ թվում Սովետական Միության մեջ և Հայաստանում, բնության բարիքները անտնտես-

վար ու միակողմանի շահագործման հետևանքով, մեր անտառները խիստ կրճատվել են, լեռնալանջերի բերքատու հողերի զգալի մասը քայքայվել է, ջրի միջոցով հողատարվել, օգտակար գազաններն ու թռչունները խիստ կրճատվել են, շատ տեսակներ բոլորովին անհետացել, ջրերը պակասել ու աղտոտվել են, շատ տեղերում անհետացել են ձկները: Իսկ այդ լուրջ վնաս է հասցրել ժողովրդական տնտեսությանը: Օրինակ, թռչունների խիստ կրճատման հետևանքով, մեր այգիներն ու անտառները, կուլտուրական բույսերը ենթարկվում են բազմաթիվ ու բազմատեսակ վնասատու միջատների, որոնք մեծ չափով իջեցնում են բերքատվությունը, շարքից դուրս հանում անտառները: Անհրաժեշտություն է առաջանում վնասատուների դեմ պայքարել քիմիական նյութերով, որոնք մասնակի կերպով թունավորում են միջավայրը, հողն ու ջուրը, մտնում բույսի, ապա սննդամթերքների մեջ և որոշ վնաս հասցնում նաև մարդկանց առողջությանը:

Հայաստանի Գերագույն սովետը 1958 թ. հրապարակել է բնության պահպանության հատուկ օրենք, որի համաձայն պետական պահպանության տակ են առնված մեր անտառները, հողերն ու ջրերը, բուսական ու կենդանական աշխարհը, հանրա-

# ՀԱՐԳԱ՞ՆՔ, ԹԵ

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՈՐԲՈՎՍԿԻ

Մարդը նստում է վարսավիրի բազկաթոռին և խնդրում, որ սափրեն իրեն: Ածելին փափուկ սահում է նրա դեմքի վրայով, և մարդու մտքով չի էլ անցնում իրեն անարգված զգալ: Ընդհակառակը, երբ վարսավիրը ավարտում է իր գործը, մարդը նրան շնորհակալություն է հայտնում և շտապում մուծելու սափրելու վարձը:

Մորուք սափրելը բոլորովին այլ կերպ էին ընդունում հնում, դա մեծագույն անարգանք էր համարվում: Ահա մի օրինակ: Այնպես պատահեց, որ Չինգիզխանի դեսպաններից մեկը 1220 թվականին եկավ Խորեզմ՝ Միջին Ասիայի ամենահարուստ քաղաքներից մեկը: Քաղաքի կավաշեն պարիսպներին դեռ չէր մոտեցել մոնղոլական հեծելազորը: Վտանգը հեռու էր, անապատներ ու տափաստաններ էին ընկած «Աշխարհը նվաճողի» և այդ ուրախ քաղաքի միջև: Երևի դա էր պատճառը, որ այստեղ հեգնանքով էին նայել մեծ պատիվների սպասող դեսպանի պահանջներին: Ու դեսպանին իր տեղը ցույց տալու համար նրա ուղեկիցներից երեքի բեղ ու մորուքը սափրել էին:

Նույն գիշերն իսկ Չինգիզխանի դեսպանն ու իր ուղեկիցները թամբում են ձիերը և գաղագած լքում քաղաքը:

Հեծյալները շարժվում են դեպի հյուսիս: Շքախմբից երեքը դեմքները ծածկած էին պահում: Մեծ ամոթ էր բեղ ու մորուք չունենալը:

Անցավ մի քանի շաբաթ: Խորեզմն արդեն մոռացել էր սնապարծ դեսպանին: Ուրբաթ օրն ամենօրյա նույն ժխորն էր տիրում շուկայում: Լուսադեմին առաջվա պես հնչում էր մուեձինի ձայնը, առաջվա պես փայլփլում էին մզկիթների երփներանգ գմբեթները: Թեյարաններում հնչում էին նվագն ու ծիծաղը: Եվ ոչ ոք չգիտեր, որ ծիծաղող այդ մարդիկ և ողջ քաղաքը արդեն դատապարտված են: Հեղեղի պես անսպասելի՝ հյուսիսից Խորեզմի վրա էր գալիս մոնղոլական այրուձին:

Այսպես պատասխանեց Չինգիզխանը իր դեսպանին հասցված վիրավորանքին, քանի որ դեսպանի շքախմբից որևէ մեկին անարգելը մեծ խանին անարգել կնշանակեր: Եվ անարգանքի պատասխանը ուժն էր: Դա պատահական չէր: Պատահական չէր, որ հենց բռնությունն էր դարձել մեքենայական և գրեթե վայր





կենական ռեակցիան ամեն մի վիրավորանքի հանդեպ:

Մտաբերենք երեք հրացանակիրներին, Դոն-Կիխոտին և հին ու նշանավոր գրքերի մյուս հերոսներին: Համաձայն պատվի մասին գոյություն ունեցող պատկերացումների, ամեն մի վիրավորանք ուներ միայն մի պատասխան՝ կռվի բռնվել: Կռվել ինչով լինի՝ սուսերով, պարզապես ձեռքերով, մենամարտի հրավիրել կամ հաշվեհարդար կատարել տեղնուտեղը:

Կարծես թե այստեղ տրամաբանություն չկա: Մար-

պետության տեսարժան վայրերը, որոնք ունեն կուլտուրական, գեղարվեստական, դաստիարակչական նշանակություն: Այդ օրենքը միաժամանակ պատիժ է սահմանել այն անհոգի մարդկանց նկատմամբ, որոնք իրենց հանցագործ վերաբերմունքով վնաս են հասցնում բնության բարիքներին ու գեղեցկությանը: Դրա հետ միասին օրենքը լուրջ տեղ է հատկացրել աշխատավորության և առաջին հերթին երիտասարդների ու պատանիների ակտիվ մասնակցությանը բնության պահպանության գործում:

Յուրաքանչյուր դպրոցականի, պիոների, կոմերիտականի սրբազան պարտքն է խտացնել բնության պատանի բարեկամների շարքերը, կազմակերպել դպրոցական «կանաչ պարեկներ», բրիգադաներ, հսկիչ պոստեր և արթուն պահակի նման հսկել, պահպանել հայրենի բնությունը, նրա հարստությունները, հանգստի վայրերը, գեղեցկությունները, երբեք չմոռանալով, որ լենինյան պիոներիայի պատգամներից մեկն ասում է, որ պիոները պարտավոր է պահպանել բնությունը:

**Պրոֆ. Խ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆ**
(Հայաստանի բնության պահպանության կամավոր ընկերության նախագահ)

---

դուն սրիկա են կոչել: Նա ի՞նչ անի, սկսի ամենքին համառ ու համոզիչ բացատրել, թե այդպես չէ՞, թե ինքն, ընդհակառակը, ազնի՞վ մարդ է: Ո՛չ, իհարկե: Ինչպես ցույց են տալիս գրական օրինակները, նա ավելի շուտ դրա փոխարեն ապտակ է հասցնում:




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Բայց ընդունենք, թե դրանով նա ցույց տվեց սեփական ուժը, վճռականությունը, նույնիսկ քաջությունը, բայց չէ՞ որ խոսքն այդ հատկությունների մասին չէր:

Հասարակական կարգացման վաղ շրջաններում ուժն ու քաջությունն էին ամենից ավելի գնահատվում մարդու մեջ: Որքան մարդս ֆիզիկապես ուժեղ էր, այնքան ավելի էր հարգվում: Այդ պատկերացումներից էր բխում նաև դյուցազունների պաշտամունքը, որ ունեցել են շատ ժողովուրդներ: Ի՞նչ հատկությամբ էր օժտվում էպիկական դյուցազունը ամենից առաջ: Խելքո՞վ: Լավ արտաքինո՞վ կամ լավ վարքագծո՞վ: Ո՛չ, ամենից առաջ և ամենից վեր՝ ֆիզիկական ուժով:

Ուժի այդ պաշտամունքը ծնունդ էր առնում մարդկանց գոյության պայմաններից, բնության դեմ մղած պայքարից: Զարմանալի չէ, որ դա իր կնիքն էր դնում նաև հասարակական հարաբերությունների, վարվեցողության ձևերի վրա: «Ուժեղն ուտում է յուղալի ու համեղ պատառը, թույլերը գոհանում են թերմացքներով,— գրել են ժամանակակիցները հոների մասին:— Երիտասարդներին ու ամրակազմներին նրանք հարգում են, ծերերն ու թուլակազմները քիչ են հարգվում»:

Ուժն էր հին ժամանակներում հարգանք ներշնչողը: Ահա թե ինչու, երբ այսօր մեկը ձեռք է բարձրացնում մյուսի վրա՝ նրա մեջ խոսում է ոչ թե դատողությունը, այլ հեռավոր նախնիների բնազդը, հազարամյակներ առաջվա գազանաբարո ձայնը:

Ահա թե ինչու, ուրիշին ստորացնելով, նրան տառապանք պատճառելով, տիրակալները հպարտանում էին իրենց այդ կորությամբ: Միանգամայն վստահ, որ դրանով պետք է սերունդների մեջ հարգանք առաջացնի իր նկատմամբ, պարսկական թագավոր Դարեհ առաջինը փորագրել է տվել այս տողերը. «Ֆրավարտիշին բռնեցին և բերեցին ինձ մոտ: Ես կտրեցի նրա քիթն ու ականջները, կտրեցի լեզուն և փորեցի աչքերը: Պահեցի նրան իմ պալատում շղթայակապ: Ամենքը կարող էին տեսնել նրան: Հետո խաչ հանեցի...»

Դուք, երևի, տեսել եք նկարներում պատկերված ռուս բոյարների: Ուշադրություն դարձրե՞լ եք նրանց ձեռքի երկար փայտին՝ գավազանին: Նրանք ոտքով այնքան շատ չէին քայլում, որ հենվեին գավազանին: Դա ուրիշ նպատակ ուներ: Գավազանը նրանք հաճախ գործի էին դնում իբրև մահակ՝ ուսյալ մարդուն ցանակոծելու համար:

Նույնիսկ Ալեքսեյ Միխայլովիչ ցարը, որ իր մեղմ

վարքի համար Հեգաբարո էր կոչվում, քիչ էր պատահում, որ մերձավորների հետ խոսեր առանց ձեռքերը գործի դնելու: Մեկ անգամ չէ, որ նա ծեծել է բոյար Ռադիոն Ստրեշնևին ու քաշել նրա մորուքից: Այդպես էլ ուրիշ բարձրաստիճան անձանց հետ:

Պարզ է, որ նման պարագաներում ֆիզիկական ուժի հարաբերությունը դեր չէր խաղում. վտիտ ու թուլակազմ ցարը կարող էր լիուլի ու անպատիժ ծեծ տալ հաղթանդամ բոյարին, հալից ընկած ինչ-որ մի ազնվական՝ դյուցազնի կերպարանք ունեցող շինականին: Մեծի իրավունքը նրանն էր, ով ավելի բարձր տեղ էր գրավում սոցիալական հիերարխիայում (ստորակարգության մեջ): Այսպիսով, դասային, իսկ հետագայում էլ ունեցվածքային առավելությունը եկավ փոխարինելու ֆիզիկական առավելությանը:

Այնտեղ, ուր իշխել է սոցիալական անհավասարությունը, վարքաձևը (էտիկետը) ծառայել է այդ անհավասարությանը: Կախման մեջ եղող մարդկանց կախյալ և ստորադաս վիճակն ավելի՛ է ընդգծվել: Իշխող դասին պատկանողները ամեն միջոց գործի դնելով, ցուցադրում էին իրենց գերադաս վիճակը: Բարևներին պատասխանում էին դժվարությամբ, հազիվ նկատելի: Հագնվում էին այնպես, որ արտաքնապես էլ տարբերվեն մյուսներից: Քայլ իսկ չէին անում ոտքով, որ իրենց արժանապատվությա՛նը չվնասեն: Հասարակ ժողովրդից սահմանազատվում էին իրենց անունների ու տիտղոսների բարդ շարաններով: Մշակել էին վարվեցողության ստորացնող ձևեր իրենցից ցած կանգնածների հետ:

Մի անգամ, Լոնդոնի փողոցներից մեկով անցնելիս, Հերցենը դիպել է մայթին գցված մի գորգի, որ փռված է եղել մի մեծահարուստ տան շքամուտքի առաջ: Ըստ երևույթին, սպասելիս են եղել կարևոր մի անձի: Գորգի երկու կողմում կանգնած ծառաները անցորդներին թույլ չեն տվել անցնել գորգի վրայով, այլ ստիպել են իջնել մայթից և գորգը շրջանցելով, գնալ ցեխոտ փողոցի միջով: Հերցենին զզվանք է պատճառել այդ ստորաքարշությունը: Նա ցած չի իջել մայթից: Ծառաներից մեկին մի կողմ հրելով, անցել է ուղիղ գորգի վրայով: Ինչպե՞ս է դրան վերաբերվել ծառան:

— Թող անցնի,— ասել է նա մյուսին,— սա ջենտլմեն է:

Անծանոթ անցորդի դիտումնավոր կոպտությունը ծառան ընդունել է իբրև բարձր դիրքի նշան: Ժամանակակիցների հոգեբանությունը լավ գիտեցող Հերցենը, իհարկե, հենց այդ էլ նկատի է ունեցել:

Ռուս հռչակավոր իրավաբան Ա. Կոնին, ավագ դատախազ եղած ժամանակ, շատ է տանջվել այն քաղաքավարական այցերից, որ պարտավոր էր անել վերադասներին: Բարեբախտաբար, երբեմն կարելի էր այցելության փոխարեն այցետոմսը թողնել բարապանի մոտ: Մի անգամ նրա մեջ ծագել է երջանիկ միտք: Կառապանին հրամայել է մուշտակի փոխարեն հագնել իր վերարկուն, գլխին դնել և հերթով գնալ բոլորի տները՝ իր փոխարեն այցետոմսերը տանելով: Փորձը հաջողվել է: Դրանից հետո կառապանն է Կոնիի փոխարեն այցելություններ արել:

— Վասի՛լի Ֆյոդորովի՛չ,— անհանգստացել է մի անգամ Կոնին,— իսկ բարապանն ու ծառաները չե՞ն նկատում, որ դուք եք այցելողը և ոչ թե ես:

— Ի՞նչ եք ասում, մաքներով էլ չի անցնում,— իր գործն իմացողի վստահությամբ ասել է կառապանը,— ես նրանց հետ շատ հանդուգն եմ վարվում:

«Հանդուգն վարվեցողություն»,— սա եղել է բարձրաստիճան լինելու ստույգ նշանը:

Մի անգամ Չեխովի ներկայությամբ խոսք է բացվել մոդայական մի ժուռնալի խմբագրի մասին, որը ծայրահեղ կոպիտ էր վարվում կախման մեջ գտնվող և ենթակա մարդկանց հետ:

— Դե, իհա՛րկե,— դառնորեն քմծիծաղ է տվել Չեխովը, որ ճանաչել է նրան,— չէ՛ որ նա ազնվական է... Հայրը տրեխ էր հագնում, իսկ ինքը՝ լաքած կոշիկներ...

Այսպես, ստորին խավերից բարձրանալով, կարճամիտ մարդիկ ջանում էին կապկել վարվեցողությունն այն մարդկանց, որոնց դեռ երեկ նայում էին ներքևից վերև: Ցավոք, մեր օրերում էլ քիչ չեն անցյալի վատթար օրինակների այս տխուր վերապրուկները:

Ամենքիս ծանոթ է «անցյալի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ» արտահայտությունը: Սովորաբար այդպես ենք կոչում այն երևույթները, որ օտար են մեր հասարակությանը, մեր կարգերին, երևույթներ, որոնց արմատներն անցյալի մեջ են: Գոռեհիկ մարդը, ստորաքարշը, շահամոլը, պաշտոնամոլը կրում են այդ անիծյալ անցյալի կնիքը:

Մարդկանց հետ շփվելու արվեստը կազմավորվել է մարդկության ողջ պատմության ընթացքում: Ահա թե ինչու, դիմելով անցյալին, մենք այնտեղ գտնում ենք ոչ միայն անհատի ստորացում և ոտնահարում, այլև նշաններն այն հարաբերությունների, որ հենված են մարդու հանդեպ հարգանքի, անկեղծության և համերաշխության վրա: Դա այն լավն է ու բարին, որ միշտ եղել է ու միշտ ընդդիմացել է չարին ու դաժանությանը: Դա այն լավն է, որ մենք պետք է խնամքով ընդունենք անցյալի ձեռքերից: Քանի որ բոլոր հասարակակարգերում էլ ապրել է բարին ստեղծող ու պահպանող ժողովուրդը: Ու միշտ էլ եղել են մարդիկ, լավ մարդիկ, որ ոտքի են ելել հանուն մարդկային արժանապատվության պաշտպանության:

Շատ բան է փոխվել մարդկային կյանքում դարեր ի վեր, և այսուամենայնիվ, այսօր էլ դեռ հարկավոր է խոսել վայելուչ վարքագծի, մարդու հանդեպ ունենալիք հարգանքի և այդ հարգանքն արտահայտելու կարողության մասին: Բայց դա արդեն՝ մեր հաջորդ զրույցներում:

*Թարգմ. ՄԱՆԱ ԱՅՎԱԶՅԱՆ*

# Գոթական քարե սլաքներ

Երևի ձեզանից ոմանք դիտել են «Փարիզի Աստվածամոր տաճարը» կինոնկարը կամ գուցե ընթերցել Հյուգոյի նույնանուն վեպը: Այդտեղ ուշադրության կենտրոնում է հռչակավոր մի շինություն, որը համարվում է գոթական ճարտարապետության անմահ կոթողներից մեկը: Իսկ ո՞րն է գոթական ճարտարապետությունը. ե՞րբ և ինչպե՞ս էին ստեղծվում այդպիսի կոթողներ:

11-րդ դարում ռոմանական ոճի ճարտարապետությանը (ամրոցի տեսք տվող ծանրանիստ ձևեր, հաստ սյուներ, կիսաշրջանաձև կամարներ, նեղ լուսամուտներ, հարթ կամ կիսակլոր կտուրներ), փոխարինելու եկավ գոթականը՝ սլաքաձև սուր գմբեթներով. սուր կամարներով, մեծ դահլիճներով տաճարների ոճը: Քաղաքները սկսեցին իրար հետ մրցել. թե որն ավելի մեծ, ընդարձակ շինություն կկառուցի:

Ամյենի տաճարը բռնում է 7 հազար քառ. մ. տարածություն: Այժմ Պարթենոնի տաճարը կարող էր որպես ցուցանմուշ տեղավորվել այդ շենքի ներսում: Կյանքն ինքն էր այդպես թելադրում. հեթանոսական շրջանում տաճար մտնելու իրավունք ունեին միայն կրոնի սպասավորները. իսկ ժողովուրդը դրսում էր կանգնում. մինչդեռ այս տաճարներում կատարվում էին ոչ միայն կրոնական արարողություններ, այլև աշխարհիկ կյանքին վերաբերվող ժողովներ. տրվում էին ներկայացումներ. կատարվում աճուրդական գործարքներ: Այդպիսի վիթխարի չափսերով շինություններ կառուցելը հնարավոր դարձավ միայն այն ժամանակ, երբ հայտնագործվեց քարե սլաքաձև կամարների ոճը: Առաջին օրինակը տվեց անգլիական Դերգեմ քաղաքը: Այնուհետև տարածվեց Եվրոպայով մեկ: Կառուցողական այդ նորույթի էությունն այն էր, որ պատը բարձրանում էր ինչպես ծառաբուն. ապա ճյուղավորվում սուր կամարների ձևով, առաջին կամարը հենվում էր պատին. իսկ հաջորդ կամարները՝ մեկը մյուսի վրա. և այսպես այնքան, որքան հնարավոր էր: Հետզհետե ավելի ու ավելի բարձր էին կառուցում գմբեթներն ու գմբեթաձողերը, որոնք ավելի գրավիչ տեսք էին տալիս շենքերին: Եթե Փարիզի Աստվածամոր տաճարի ձողը 35 մետր բարձրությամբ արվեց (1163թ.), ապա Շարտրինը (1194 թ.) հասցվեց 36,45 մետրի. Ամյենինը՝ (1221թ.) 42 մետրի. և այլն: Այդպիսի վիթխարի տաճարների բարձր կամարների տակ շատ խորհրդավոր էր հնչում կրոնավորի ձայնը. երգեհոնի հնչյունները ջերմ արձագանք էին տալիս ունկնդրի հոգում. վեհացնում, ներշնչում էին ոչ-երկրային կյանքի պատկերներ:

Իսկ ի՞նչ միջոցներով էին կառուցվում այդպիսի հսկայական շինությունները. ամենից առաջ հավատացյալ ժողովրդի նվիրատվությամբ: Տալիս էին՝ ով ինչ կարող էր. դրամ. մթերք. անասուն, գործվածք. զարդեղեն: Ոմանք. նվիրատվության փոխարեն. իրենց աշխատանքով էին մասնակցում կառուցմանը: Կար նաև օգնության այսպիսի ձև. ամեն հավատացյալ. քաղաք մտնելիս, իր հոգու պարտքն էր համարում հետը բերել մի քար. կամ մի պարկ ավազ. կամ խիճ: Այսպես կառուցվեց իսպանական Կոմպոստելլո քաղաքի ս. Հակոբի տաճարը: Իսկ եթե մեծ միջոցներ էին ունենում, ապա հնարավոր էր լինում հեռա-

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ





ԻՆՔՆԱՆԿԱՐ

# Ե Ղ Ի Շ Ե

Հարյուր տարի առաջ՝ 1870 թվականին, Էջմիածնում ծնվեց հայ գեղանկարչության մեծանուն վարպետներից մեկը՝ Եղիշե Թադևոսյանը:

Նա իր նկարչական կրթությունը ստացել է Մոսկվայում, 1894 թվականին ավարտելով տեղի գեղանկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանը: Դրանից հետո նրան չհաջողվեց շարունակել ուսումը, բայց նա ինքնակրթությամբ լրացրեց պակասը, դառնալով մեր շատ կարգացած նկարիչներից մեկը: Մի քանի անգամ նա ճանապարհորդել է Եվրոպայում ու Առաջավոր Ասիայում, մասնակցել եվրոպական, համաշխարհային և Մոսկվայում ու Թիֆլիսում կազմակերպված շատ ցուցահանդեսների: 1898 թվականին երկու անգամ շահեց Մոսկվայի լավագույն երիտասարդ նկարչի մրցանակը: 1901 թվականից մշտապես բնակություն է հաստատել Թիֆլիսում, ուր և աշխատել է որպես նկարչության ուսուցիչ: 1915 թվականին նա դարձավ Թիֆլիսում կազմակերպված «Հայ նկարիչների միության» առաջին նախագահը: Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո, սկսած 1920 թվականից, նա դասավանդում էր Վրաստանի նորաստեղծ գեղարվեստի ակադեմիայում, տարիների ընթացքում դաստիարակելով հայ, վրացի և այլ ազգերի բազմաթիվ նկարիչների:

---

վոր վայրերից բերել ընտիր քարեր: Օրինակ, Վենետիկի ս. Պետրոսի տաճարի քարերը նավերով բերեցին Սիցիլիայից, Աթենքից, նույնիսկ՝ Աֆրիկայից:

Այն ժամանակներում որևէ շենք, նույնիսկ այդքան մեծ չափերի, բարդ ու գեղեցիկ տաճարներ կառուցելիս, նախապես մանրամասն նախագիծ և մակետ չէին ստեղծում և ապա սկսում շինարարությունը, ինչպես որ հիմա է արվում: Ճարտարապետը կավից կամ գիպսից ընդհանուր գծերով պատրաստում էր շենքի փոքրիկ մակետը, և սկսվում էր կառուցումը: Ապա կառուցման ընթացքը թելադրում էր, թե հետո ինչ կարելի է անել: Դրա հետևանքով էլ երբեմն թույլ էին տրվում գեղարվեստական կամ կառուցողական զանազան սխալներ, թերություններ: Օրինակ, այնպիսի նշանավոր շինություն, ինչպիսին Փարիզի Աստվածամոր տաճարն է, նույնպես զերծ չի մնացել դրանից. տաճարի վրա ուսնաձև ֆիգուրները թարս են դրված, շենքը միանգամից ծանրաբեռնել են անչափ շատ արձաններով ու բարձրաքանդակներով:

Միջնադարում ճարտարապետը չէր արժանանում ո՛չ մեծ պատվի, ո՛չ էլ բավարար վարձատրության: Ոչ մի տեղ չէր նշվում նրա անունը. և քչերն են հայտնի հետագա սերունդներին:

Ճարտարապետին հատկացվում էր մի կտոր մշակելի հողամաս, տալիս էին ձմեռային մի մուշտակ, նվերներ, և ամենամեծ պարգևն այն էր, որ իրավունք ուներ թաղվելու իր կառուցած տաճարում:

Այդ պատվին արժանացավ Փարիզի Աստվածամոր տաճարի հեղինակ Ժանը (Շելլ գյուղացի):

Քարագործ վարպետներն ունեին իրենց արհեստին վերաբերվող գաղտնիքներ, որոնք կողմնակի մարդկանց հայտնելը արգելված էր: Այդ մասին զգուշացնում էր «Արհեստների գիրքը», գրված Էտյեն Բուալոյի կողմից, 1268 թվականին: Գաղտնիքը հայտնող վարպետը հեռացվում էր համքարությունից կամ այլ պատիժ ստանում:

Իսկ ինչու՞ է այս ճարտարապետությունը կոչվում «գոթական»: Գոթերը ռազմաշունչ, ավարառու ցեղեր էին (գերմանական լեզվախմբից), որոնք մեր թվարկության սկզբում ապրում էին Վիսլա գետի ստորին հովիտներում, 3-րդ դարում գաղթեցին Սև ծովի հյուսիսային ափերը, իսկ 375 թվականին, ջախջախվելով հոներից, նրանց մնացորդները նահանջեցին դեպի արևմուտք և ձուլվեցին տեղացիներին: Այնպես որ գոթական ճարտարապետությունը ոչ մի կապ չունի իսկական գոթերի հետ: Այդ անվանումն առաջացել է այն ժամանակ, երբ արդեն գոթական ոճը իր տեղը զիջում էր Վերածընությանը, և այս նոր ոճի ներկայացուցիչները նախավերածնության շրջանի ճարտարապետությունը համարելով բարբարոսի, անտաշ մարդու ձեռքի գործ, անվանեցին «գոթական»:

Սակայն գոթական ոճը ճարտարապետական արվեստի մի նոր, բարձր աստիճան էր, մարդու կառուցողական ու գեղարվեստական մտքի հուժկու թռիչք և խորը հետք է թողել մարդկային մշակույթի պատմության մեջ:

Նա մահացավ 1935 թվականին և թաղվեց Երևանում:

Թադևոսյանի առաջին առավել նշանավոր նկարներից մեկը, որի համար ստացավ Մոսկվայի մրցանակը, նվիրված է երեխաներին և կոչվում է «Կեսօրյա ճաշ»: Այստեղ նա պատկերել է 1896 թվականի ահավոր ջարդից փրկված հայ գաղթական որբուկներին: Փոքրիկ տղան սայթաքել և կոտրել է ճաշով լի

Թադևոսյանը մեծ ու բարձրաճաշակ բնանկարիչ է: Նրա բնանկարներում կգացվում է բնության շշունջը, հեղինակի խոհերի ու ապրումների գունագրված արձագանքը:

«Արագած լեռը» հայտնի բնանկարում, նուրբ ու լուսավոր գուներանգների միջոցով, նկարիչը պատմում է հայրենի երկրի բանաստեղծական գեղեցկության մասին:

# Թ Ա Դ Ե Վ Ո Ս Յ Ա Ն

ամանն ու կողքին պառկած հեկեկում է, քիչ այն կողմ վշտացած ու սովահար նստած են ճաշի սպասող նրա ընկերները: Թեև նկարը (որի փոքրիկ հեղինակային կրկնությունն է մեզ հասել, իսկ իսկականը ոչնչացել է հրդեհի ժամանակ) աչքի է ընկնում լուսավոր երանգներով, թողնում է ճնշող տպավորություն: Արևի պայծառ լույսի տակ կատարվել է շատ տխուր մի իրադարձություն, որը հուզել է զգայուն նկարչին, և պատկերը այդ տխուր հուզմունքով համակում է դիտողներին նույնպես:

Ճշմարտացի, վառ ու ինքնատիպ են նրա դիմանկարները, որոնցից նշանավոր են ինքնանկարը, Հովհաննես Թումանյանի, Շիրվանզադեի, Հ. Հակոբյանի և այլոց դիմանկարները: 1935 թվականին Թադևոսյանը ստեղծեց իր ամենանշանավոր, հայ գեղանկարչության ամենաուշագրավ երկերից մեկը՝ «Կոմիտաս» պատկերը, որը իրավամբ մեծ երգահանի կերպարի լավագույն մեկնաբանումն է մեր կերպարվեստում:

ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿՈՒՐՂԻՆՅԱՆ

ԱՐԱԳԱԾ



# ՋՂՋՈՒՄ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Ես ու մոտիկ ընկերս՝ Բաբգենը, հորեղբորս շնորհիվ, որ անվանի պղնձագործ է, միասին ընկանք Ղափանի ամենաչքնաղ ճամբարներից մեկը: Հիանալի օրեր էին, ու եթե ասեմ Հայաստանի ամենագեղեցիկ վայրերից մեկն էր՝ չեք հավատա: Ի՜նչ անտառապատ սարեր, ի՜նչ աղբյուրներ ու ջրվեժներ, ի՜նչ հեքիաթային գիշերներ: Այնքան մեծ էր մեր ոգևորությունը, որ երկրորդ օրն իսկ, չգիտեմ ո՞ւմ առաջարկությամբ, մենք կազմեցինք Դավիթ-բեկի անվան տասնյակ, որին մեր ջոկատավար Բաբայանը անվանեց թռուցիկ խումբ: Այդ՝ երևի այն պատճառով, որ տասս էլ ալպինիստական հակումներ ունեինք և, պարծենալու համար չեմ ասում, մարզված տղերք էինք: Առաջինը, ինչպես ասում են, մենք էինք ընկածում անառիկ բարձունքները, հասնում անմատչելի, -ավերակ բերդերի մնացորդներին, խաչքարերին և այնտեղ թողնում դավիթբեկյան մեր զինանշանը, որ խավաքարտից էր՝ սիրտ, վրան գունավոր մատիտներով նկարված վահան, թուր և բոցավառ մի կեռոն:

Մի երեկո տասնյակը որոշեց վաղ լուսաբացին, ընկեր Բաբայանի գլխավորությամբ, իջնել Վահանավանք՝ 10-րդ դարում Սյունյաց թագավորների կողմից կառուցված Հայաստանի չքնաղ հուշարձաններից մեկը, որն այնքան գեղատեսիլ մի վայրում է գտնըվում և Ստեփանոս Օրբելյան պատմիչի ասելով եղել է «խրախարան իշխանաց», այսինքն՝ իշխանների խրախճանքի վայր:

Քնեցինք, որոշելով, որ լույսը չբացված ոտքի ելնենք: Բայց ես այնքան էի ոգևորվել այդ արշավով, որ քնով ընկա և երազիս մեջ Սյունյաց քաջերի հետ էի ու այդպես էլ, երբ հերոսական մի լիցքով աչքերս բացեցի, տեսնեմ Բաբգենը կողքիս չէ: Պատկերացնո՞ւմ եք, խումբը մեկնել էր առանց ինձ... Դե՛, էլ ի՜նչ... ոչ ոքից այնքան չէի նեղացել, ինչքան Բաբգենից: Յոթ տարվա ընկեր լինել և այդպես վարվել... Ջղայնությունից այդ օրը չճաշեցի, թեև հետո, ճաշը վերջանալուց հետո, շատ ափսոսացի... Ինչևիցե, գիշերային խավարը փռվել էր արդեն, երբ խումբը վերադարձավ ոգևորված իր տեսած-լսածով... Ես իսկույն մի կողմ քաշեցի Բաբգենին ու արցունքներս հազիվ զսպելով՝

— Բարեկամի՛ մեկը,— ասացի,— սա՞ է քո ընկերությունը, ինչո՞ւ չես արթնացրել ինձ:

# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԱՅԳԻ՝ ԶԱՆԳՎԻ ԶՈՐՈՒՄ

*Անցորդները զարմացած կանգ էին առնում, հետաքրքրությամբ դիտում մի խումբ երեխաների, որ հավաքում էին թեք սարալանջի քարերը, առանձնացնում կույտ-կույտ, փոսեր էին փորում, փոքրիկ առուներ բացում: Նրանց հետ աշխատող մեծահասակները բացատրում էին, որ հիմնադրվում է պատանի բնասերների հանրապետական կայան, որն ունի ընդամենը երկու հեկտար տարածություն, որ երեխաներն իրենք են մշակելու այգին: Շատերը տարակուսանքով ուսերն էին թոթվում, չէին հավատում, որ այդ ամայի վայրում կարող է այգի լինել:*

*Դա 1958 թվականին էր...*

*Առաջին ծառը, որ տնկեցին երեխաները, ամուր փարվեց հողին: Դա մի փոքրիկ կենսածառ (տույա) էր, որը կամաց-կամաց ճյուղեր արձակեց, մեծացավ, փարթամացավ: Նրա շուրջը նոր-նոր ծառեր տնկվեցին, փոքրիկ առուն ջուր բերեց, իսկ թեք սարալանջերին դարավանդներ պատրաստվեցին: Մայրաքաղաքի տարբեր դպրոցների պատանի բնասերները օգնության հասան, փորեցին, փխրեցրին, ջրեցին, մարգեր պատրաստեցին: Անսահման էր առաջին բերքի պատճառած ուրախությունը: Մոսկվա ուղարկված ցուցանմուշները բարձր գնահատականի արժանացան: Պարգևները հետևեցին մեկը մյուսին: «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի գլխավոր կոմիտեն Հայաստանի պատանի բնասերների հանրապետական կայանին պարգևատրում է առաջին կարգի դիպլոմով»: 1968 թվականին ցուցահանդեսին մասնակցելու և առաջնություն նվաճելու համար պատանի բնասերներից 7 հոգի պարգևատրվեցին բրոնզե մեդալներով: Լավ աշխատանքի համար յուրաքանչյուր տարի պատանի բնասերների հանրապետական կայանի ուղեգրերով Մոսկվա են մեկնում 20—25 երեխա:*

***

*Ամեն անգամ, երբ ավտոբուսը կանգ է առնում դարբասի մոտ, վարորդ Մելքոն Մելքոնյանը դիմում է երեխաներին.*

*— Դե՛, հասանք, այսօր ի՞նչ օյին եք խաղալու:*

*Երեխաներն ուրախ ծիծաղում են: Նրանք հիշում են այն օրը, երբ տանձենին պատվաստում էին սերկևիլի ծառին: Վարորդ Մելքոնը ծիծաղեց.*

Իսկ նա շվարած, որովհետև երբեք ինձնից չէր սպասում այդ «Բաբուշ»-ը, շշնջաց, թե՝

— Ես ի՞նչ մեղավոր եմ, ընկեր Բաբայանը չթողեց:

— Ո՞նց թե ընկեր Բաբայանը չթողեց,— վրա տվեցի ես:— Ի՞նչ է, ես թռուցիկից չե՞մ:

Նա թե՝

— Ո՞վ է ասում, որ թռուցիկից չես. ընկեր Բաբայանը ասաց, որ դու չես կարող գալ, որովհետև ժամանակին պիտի սրսկվես:

Այս որ լսեցի, արյունը տվեց գլխիս:

— Բաբուշի՛ մեկը, ապուշի՛ մեկը,— այո, հենց այսպես էլ հանգավոր ասացի,— ես այստեղ եկել եմ հանգստանալո՞ւ, թե՞ ծակծկվելու... Գոնե դու մի՛ կրկնիր այդ հիմարությունը. չէ՞ որ այդ սրսկումը պարզապես անարդարություն է և բռնություն, ուրիշ ոչինչ...

Ասացի ու շուռ գալով հեռացա:

Հենց այստեղ էր, որ, ինչպես ասում են՝ սև կատու անցավ մեր միջով. բայց ավելի ճիշտ, ոչ թե սև կատու էր անցել ու բաժանել մեզ, այլ մի սպիտակ շուն: Այո, մեր խռովությունը հենց այդ զզվելի շան պատճառով սկսվեց: Բանն այն է, որ դրանից երկու օր առաջ, երբ ձորաբերնին, մասրենիների թփերով ծածկված ժայռերի վրա ես ընկել էի մի երկարապոչ մողեսի ետևից, անզգուշաբար կոխ տվեցի թփերի շվաքում պառկած շան պոչը, և այդ անիրավը, ոնց որ լուցկի կպած բենզինը, մի ահռելի գռմռոցով թռավ վրաս: Նա ինձ վրա թռավ՝ ես էլ մասրենու վրա, որի մյուս կողմում ձորն էր: Թռչելիս զգացի, որ շունը բռնեց իմ կարճ տաբատից, բայց ոչ մի ատամի ծակոց չզգացի, թեև, բուժկայանում, հենց տաբատիս պատռված այդ տեղում էլ ինչ-որ խորն ու կասկածելի քերծվածքներ հայտնաբերեցին: Ես հա բացատրում, հասկացնում էի, որ ախր շունն ինձ չկծեց, որ մասրենու վրայից ձորը գլորվելիս է եղել՝ լսողն ով էր: Բուժքույրը լսեց այդ դեպքի վայրից քիչ հեռվում ծաղիկներ փնջող մի քանի բացբերան աղջիկների և իսկույն եզրակացրեց, թե՝ կատաղած շուն է եղել, ես չեմ



կարող անուշադրության մատնել: Ու այդ օրվանից սկսեց ինձ ծակծկել... Ուղիղ քառասուն հատ պիտի սրսկվեի՝ այն էլ փորի՜ց... Հաշվեցի, ուրեմն, քաղաք վերադառնալուց հետո էլ տասնյոթ անգամ պիտի ծակեին... Եվ, պատկերացնո՞ւմ եք, մինչև վերջ էլ սրսկեցին...

---

*— Տանձենին որ բոյ չքաշի, երկինք չհասնի, նրա վրա տանձ կբուսնի՞:*

*— Կբուսնի՛,— ասացին երեխաները:*

*Եվ, իրոք, ժամանակ անցավ, ծառը մի քիչ բարձրացավ ու աճը դադարեց: «Ա՜յ քեզ հրաշք,— մտածում էր Մելքոնը,— էս երեխաների ձեռքից ամեն ինչ կգա»: Իսկ երեխաները նորանոր փորձեր էին անում, նոր, հետաքրքիր գաղտնիքներ իմանում: Հիդրոպոնիկ եղանակով նրանք վարունգ աճեցրին:*

*Բայց այդ բոլորը չեն զարմացնում պատանի բնասերների հանրապետական կայան եկող երեխաներին: Իսկ նրանք շատ են: Գալիս են Երևանի Պռոշյանի, Սպանդարյանի, Կրուպսկայայի, Խանջյանի, Վաղարշյանի անվան, № 1 երկարօրյա ու մյուս դպրոցների պատանի բնասերները:*

*Այս տարի պատանի բնասերները՝ Անահիտը, Ռոբերտը, Լևոնը, Սերյոժան, Արմենը և մյուսները խաղողն աճեցնում են նոր, լարային եղանակով: Պակաս խնամք չեն պահանջում դեղձը, սալորը, թուզը, խնձորը, տանձը: Իսկ ընկույզի տնկարա՞նը... Իսկ այգու դեկորատիվ տեղամա՞սը: Այս տարի աճեցնելու են ծաղիկների նոր տեսակներ՝ աստղածաղիկ (աստրա), ծխածաղիկ (պետունյա), գեորգինա, հնդկական անթառամ, դանդուռիկ, հոտավետ ծխախոտ, աղավնիճ (վերբենա), հոլանդական և տեղական մեխակներ, նարգիզ, քաջվարդ...*

*Կայանում հատուկ տեղամաս է հատկացված ճագարներին, ընտանի թռչուններին՝ հավերին, բադերին, հնդկահավերին, խայտահավերին: Նրանց սնունդն ապահովելու համար դպրոցականներն աճեցնում են գարի, կաղամբ, առվույտ, ոլոռ...*



*...Երկու հեկտար հողատարածության փոխարեն՝ 10 հեկտար: Փոքրիկ ջերմատան փոխարեն՝ 1000 քառ. մ. տարածություն ունեցող ջերմատուն: Տիպային թռչնանոց, ճագարանոց: Փորձարարական հողամաս: Նոր ծառատեսակներ և հազվագյուտ ծաղկատեսակներ: Լողավազան: Պատանի բնասերների բազմաթիվ խմբակներ: Նոր հարմարություններ, առանձնասենյակներ, փոքրիկ կենդանաբանական այգի: Մշտական գործող ցուցահանդես՝ հանրապետության բոլոր ծայրերի պատանի բնասերների աճեցրած բերքի ցուցանմուշների համար:*

*Այսպիսին կլինի պատանի բնասերների հանրապետական կայանը եկող տարի գարնանը: Քանաքեռի դպրոցների պատանի բնասերները դարձել են նոր հողամասի առաջին նվաճողները, որովհետև հանրապետական կայանի նոր հասցեն է՝ Երևան, Քանաքեռ...*

*ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ*

Եվ այսպես, իմ ու Բաբգենի միջով՝ ես շուն ասեմ, դուք կուզեք սև կատու հասկացեք, այնպիսի մի բան անցավ, որ միայն դեկտեմբերի կեսերին հազիվհազ, մի կերպ հաշտվեցինք: Այդ էլ, իհարկե, մեր մայրիկների և հատկապես տատիկիս շնորհիվ:



— Բալի՛կ ջան, ամոթ է,— անընդհատ կրկնում էր նա ինձ,— թեև Բաբգենը մեղք չունի, բայց տեսնում եմ, որ նա չի խռովել, նա ուզում է առաջվա նման ընկերություն անել, լավ չէ, պետք է հաշտվել, բալի՛կ ջան, պետք է հաշտվել:

Ու հաշտվեցի:

•••

Հիմա լավ չեմ հիշում, հունվարի երկուսի՞, թե՞ երեքի երեկոյան մեր դպրոցի դահլիճում տոնածառի հանդես ունեինք: Բաբգենը եկավ, որ միասին գնանք: Բայց ես չէի կարող գնալ. հայրիկս ու մայրիկս նոր էին տնից դուրս եկել Նոր տարվա շնորհավորական այցելություններ կատարելու համար: Տատս մեր Նոր տարին ուրախ անցկացնելու համար այնքան էր ելումուտ արել, որ մրսել էր ու այժմ պառկած էր անկողնում: Մենակ թողնել նրան չէի կարող:

— Ափսո՜ս,— ասաց Բաբգենը:— Դե՛, ոչի՜նչ, ե՛ս էլ չեմ գնա. միայն թե ընկեր Աղասյանը պիտի ասի՝ տես, տոնածառի շուրջ արտասանելու համար հանձնարարված ոտանավորը չի սովորել, դրա համար էլ չի եկել:

Նա շատ լավ արտասանում էր և գրում ամենալավ շարադրությունը:

— Բան չկա, բալիկնե՛րս,— հսկույն մեզ օգնության հասավ տատիկս,— տոնածառին կհասնեք, մերոնք Արշակենց մոտ են գնացել, երկու քայլ է: Հովի՜կ ջան, վա՛զ տուր, մորդ կանչի՛ր:

Տատիկս այնքան բարի կին է, որ մորս էլ կանչել չէր տա, կըպառկեր իր համար, բայց նա շատ վատ էր մրսել, ջերմում էր և սիրտն էլ վատ էր: Մենակ թողնել չէ՛ր կարելի:

Այդ որ լսեցի, ուրախացած դուրս թռա մորս կանչելու: Ինչպես տատիկս ասաց՝ մեր տնից Արշակ քեռենց տուն մի երկու քայլ է, իսկ մեր դպրոցն էլ՝ այդ երկու քայլի արանքում: Երանի թե այդպես չլիներ: Երբ անցնում էի դպրոցի առջևով, տեսա, որ բոլորն էլ ուրախ-ուրախ, խումբ-խումբ տոնածառի են շտապում: Մտածեցի, մի րոպե մտնեմ, տեսնեմ ի՞նչ են անում ու դուրս գամ: Եվ մտա:

Սկզբում՝ քանի դեռ շքեղ զարդարված դահլիճը չէի մտել՝ ինձ բավականին լավ էի զգում և, նույնիսկ, քմծիծաղ տալիս. բայց, շատ չանցած, տոնական այդ ուրախ հանդեսից սիրտս փափկեց, լցվեց հուզմունքով: Ուրախ դեմքեր, սիրալիր ժպիտներ և բարեմաղթություններ: Մեկը մյուսի ետևից սկսեցին արտասանել հայրենասիրության, ազնվության և ընկերասիրության նվիրված բանաստեղծություններ ու երգեր և ես, չգիտեմ ինչքան ժամանակ էր անցել, հանկարծ հիշեցի... «Ես նստել եմ այստեղ, տաքուկ, զարդարված այս դահլիճում և Ձմեռ պապի դարձած տիկնիկային թատրոնի դերասան Պավլոս քեռու սրամտությունններն եմ լսում, մինչդեռ Բաբգենն այնտեղ՝ մեր մթնոր ննջարանում, տատիկիս կողքին ինձ է սպասում...»

Էլ չկարողացա համբերել, ուզեցի դուրս գալ, հնարավոր չեղավ: Ընկել էի դահլիճի խորքը, և իրենց ուրախ շուրջպարով ճամփաս էին փակել թիթեռնիկների թևերով զարդարված ցածր դասարանների աղջիկները:

— Համբերի՛ր, մի քիչ է մնացել, հիմա կվերջանա,— ասացին այս ու այն կողմից, ու ես ստիպված նստեցի:

Սպասեցի, մինչև որ հանդեսը վերջացավ, ես էլ իմ կարգին մյուսների հետ ստացա իմ տոնական տոպրակը, Բաբգենինն է ինձ տվեցին, որից հետո հևիհև, կարմրատակած ընկա տուն: Ծնողներս դեռ չէին վերադարձել. լույսը վառվում էր միայն իմ ու տատիկիս ննջարանում, Բաբգենին գտա նրա մահճակալի մոտ, խոր բազկաթոռի մեջ քնած վիճակում: Ինչպես երևում էր, ըսպասումը կարճելո՞ւ, թե՞ նրան մխիթարելու համար՝ տատիկս հեքիաթներ էր պատմել ու նա քնել էր այդ հեքիաթներով...

Արթնացրի և, սրտի անհուն ճմլանքով՝ իր նվեր տոպրակի հետ նրան պարզեցի և իմը... Ուրիշ ոչինչ չէի կարող անել... Հետո, ամոթից կարկամած, նայեցի տատիս: Նրա խորն ընկած մթնոր աչքերում ես արցունքներ տեսա...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



## Վկայական



«Սույնը տրվում է 1885 թվականի հունվարի 15-ին առ այն, որ այս մի զույգ կոշիկները՝ հաստ ներբաններով, միջակ կրունկներով ու կլոր քթերով, կարված է ինձ համար իմ պատվերով «Պատերազմ և խաղաղություն» վեպի հեղինակ իշխան Լև Նիկոլաևիչ Տոլստոյի կողմից, որոնք նա ինձ մոտ բերեց սույն թվականի հունվարի 8-ին և փոխարենն ստացավ 6 ռուբլի։ Հապացույց աշխատանքի լրիվ նրպատակահարմարության, ես ընկրսեցի կոշիկները հագնել հաջորդ օրվանից։ Վերոհիշյալի իսկությունը հաստատում եմ՝ դնելով իմ ստորագրությունը և իմ կնիքի գերբը։ Աֆանասի Ֆետ (Շենշին)»։




## ԱԿԱԴԵՄԻԿՈՍ ՇՏԵՏԼԻՆԻ ԳՐԱՌՈՒՄՆԵՐԻՑ



Պետերբուրգցի ակադեմիկոս Յակով Շտետլինը միաժամանակ վարիչն էր Կունստկամերայի (այսպես էր կոչվում Ռուսաստանի առաջին թանգարանը): Դա Ելիզավետա թագուհու օրոք էր, Պետրոս Մեծի դստեր: Դրա համար էլ զարմանալի չէ, որ թանգարանում ամենից պատվավոր տեղը հատկացվում էր հանգուցյալ արքայի իրերին:

Ինչ-որ մեկը մի անգամ թանգարան էր բերել թագուհու պալատականներից մեկին, մի բարձրաստիճան պաշտոնյայի: Շտետլինը անվանի հյուրին ման էր ածում թանգարանի սրահներում:

— Ահա սրանք ատաղձագործական գործիքներն են, սրանք՝ գծագրական, սրանք՝ վիրաբուժական գործիքները, որոնցից հավասար վարպետությամբ օգտվում էր մեր տեր Պյոտր Ալեքսեևիչը... Ահա այն կապան, որ նա հագնում էր... իսկ ա՛յ, սա էլ նրա հռչակավոր ձեռնափայտն է, այլ կերպ ասած՝ մահակը: Գլուխը, թույլ տվեք նկատել, փղոսկրից է կերտված...

Իշխանը ձեռքի շարժումով ընդհատեց ակադեմիկոսին և, թաշկինակը աչքերին սեղմելով, հուզված ասաց.

— Բարեկա՛մս, դուք իմ մեջ պատանեկան հուշեր եք արթնացնում: Երիտասարդ ժամանակս սույն անգնահատելի սրբությունը շատ անգամ է խաղացել իմ թիկունքին:

---

## ԱՇՆԱՆ ՄԻ ԾԱՂԻԿ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Վերջին հավքերը երգելով թռան,
Իրենց ետևում թողին անդորր,
Ձմեռնամուտը կատարից լեռան
Դանդաղ ու լռին իջնում է ձոր:

Էլ աղբյուրի մոտ չի երգում ոչ ոք,
Խոնավ ստվերն է մասրին ճոճում,
Նստել է ժայռին քարայծյամն անհոգ,
Նայում է ձորին ու որոճում:
Տերևահողմը հասել է գետափ,
Որ ոսկով ծածկել ծերպ ու կածան.
Իրիկնաժամի անչար մեղմությամբ
Հովտում հերկերն են շնչում անձայն:
Թվում է մի ձայն պիտի զրնգա,
Կարոտն է դողում ամենուրեք,
Ուր որ է կարծես պիտի մեկը գա,
Ձայնում են անձայն դաշտերը մերկ...
Դարձել է այստեղ լռությունը տեր,
Բայց սեզերի մեջ՝ գունատ, դեղին,
Աշնան մի ծաղիկ ծիծաղում է դեռ՝
Կանգնած մամռապատ քարագլխին:

## Ի՞ՆՉ ԷԼ ՀԱՄԸՆԿԱՎ...



Ֆրանսիացի բանաստեղծ Ալեքսիս Պիրոնը սովորություն է ունեցել իր ներբողներն ու ողբերգությունները նորինել լուսնկա գիշերներին զբոսնելիս: Եվ ահա մի գիշեր, Փարիզի մի նրբանցքում նրան բռնում է ոստիկանական պարեկը: Կարգի պահապանները, ըստ երևույթին, բանաստեղծին թափառաշրջիկի տեղ են դնում:

Երբ ոստիկանատուն են տանում, պետը՝ մի բռի ու անտաշ մարդ, սկսում է հարցաքննությունը.

— Ո՞վ ես, ինչո՞վ ես զբաղվում:

— Ես բանաստեղծ եմ,— պատասխանում է Պիրոնը, պատկառելի կեցվածք ընդունելով:

— Սրա՞ն տես,— մռլտում է պետը,— իմ եղբայրն էլ է բանաստեղծ:

— Ի՞նչ էլ նման են մեր ընտանիքները,— կեղծ հիացմունքով ասում է Պիրոնը:— Իսկ իմ եղբայրը նույնպես անկիրթ է:

## ԱՐՔԱՅԻ ԱՌԱՏԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆԸ



15-րդ դարի անգլիական հայտնի գրող ու պատմաբան Ջոն Լոուն պառամյալ հասակում զրկվել էր ապրուստի միջոցներից և ընկել ծայրահեղ թշվառության մեջ: Իմանալով այդ մասին, թագավորը նրան մի տեղեկանք է տվել, որի մեջ ասվում է.

«Ի նկատի ունենալով, որ Ջոն Լոուն իր կյանքի քառասուն տարին նվիրել է պատմական և գիտական հետազոտություններ կատարելուն և դրանով նպաստել մեր հայրենիքի հռչակմանը, նրան տալիս ենք մեր արքայական գթառատ թույլտվությունը մեկ տարի ժամանակով ողորմություն մուրալու Անգլիայի բոլոր ճանապարհներին և հավաքածը ծախսելու իր օգտին»:

Փաստաթուղթը հաստատված է արքայի ստորագրությամբ և կնիքով:

## ՇԱԽՄԱՏԻ ԱՐԿԱԾՆԵՐԻՑ



Կա մի զրույց Շվեդիայի թագավոր Կարլոս XII-ի՝ ռազմարշավների և շախմատի մոլի սիրահարի մասին: Մի անգամ, թշնամիներով շրջապատված ամրոցում, նա շախմատ էր խաղում իր պալատականի հետ: Խաղի դրությունն այնպիսին էր, որ Կարլոսը կարող էր երեք քայլից մատ անել: Հանկարծ թշնամու գնդակը ծակելով լուսամուտը, եկավ խփեց ձիու ֆիգուրին ու մի կողմ շպրտեց: Թագավորը որոշեց դրությունը վերականգնել, բայց տեսավ, որ այժմ մատը հնարավոր է չորս քայլից: Այդ պահին եկավ մի նոր գնդակ և դեն շպրտեց զինվորի ֆիգուրը: Կարլոսն այս անգամ սկսեց ելք որոնել հինգ քայլով մատ անելու համար: Ահա այդ անեկդոտային դիրքը.

Սպիտակներ՝ Աf5, Նg7, Զe1, զզg2, h2;

Սևեր՝ Աh5, Փf2, զզg3, h6;

***

Ուղղափառ եկեղեցին հնում հալածում էր շախմատը, որովհետև ֆիգուրավոր այդ խաղի մեջ տեսնում էր կռապաշտության արտահայտություն:



# ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆ

Վաղաժամ մահը խլեց մեր ամսագրի վաստակաշատ նկարիչներից մեկին՝ Վաչե Թևանյանին:

Երկար տարիներ Վաչե Թևանյանը աշխատակցում էր «Պիոներ» ու «Ծիծեռնակ» ամսագրերին: Նրա բարձր ճաշակով ու վարպետությամբ կատարված նկարազարդումները սիրով էին ընդունվում մանուկ ընթերցողների կողմից: Ո՞վ չի հիշում «Զորս ոսկեգույն կոճակ» վիպակը, որի նկարազարդումները այնքան հմտորեն կատարել էր Վաչե Թևանյանը: Այդ վիպակի նկարազարդումների համար նա 1967 թվականին արժանացավ մեր ամսագրի լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին:

Մեծ է Վաչե Թևանյանի վաստակը մանուկ սերնդի գեղագիտական դաստիարակության գործում, և մանուկները իրենց սիրելի նկարչին երբեք չեն մոռանա:

* * *

*Առաջին շախմատային խնդիրները հանդիպում են IX դարի արաբական ձեռագրերում: Դրանք գրված են թղթի վրա, գրչով: Նույն գրենական պիտույքներից են օգտվել, երևի, բոլոր խնդիր կազմողները, բացի ռուսական շախմատի հայր Ա. Պետրովից, որը մի անգամ շախմատային խնդիր էր գրել իր տան դռնակին՝ ածուխով: Իսկ դռնակի հակառակ կողմում գրել էր լուծումը:*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 9 սեպտեմբեր 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼՈՒՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15, Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 05736: Պատվեր՝ 873: Տպաքանակ՝ 64200: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/X 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

Մ Ր Ց Ա Ն Ա Կ Ա Բ Ա Շ Խ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության տերիտորիայում գտնվող պատմա-ճարտարապետական հուշարձանների պահպանության գործը խրախուսելու նպատակով, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի շինարարության գործերի պետական կոմիտեի ճարտարապետական հուշարձանների պահպանության ու վերականգնման վարչությունը, պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերությունը և «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում են մրցանակաբաշխություն:

*ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ.*

1. Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել հանրապետության հանրակրթական միջնակարգ և ութամյա դպրոցները, որոնք իրենց վրա են վերցնում մրցանակաբաշխության պայմանների կատարումը և այդ մասին մինչև ս/թ հոկտեմբերի 1-ը գրավոր հայտնում են մրցանակաբաշխության ժյուրիին (Երևան, Էնգելսի փ. № 2):

2. Մրցանակաբաշխության մասնակիցները պարտավորվում են՝

ա) Ստանձնել պատմա-ճարտարապետական որևէ հուշարձանի պահպանության շեֆությունը, օրինակելիորեն կազմակերպել նրա ներսի, դրսի, շրջապատի մաքրության, բարեկարգման ու կանաչապատման գործը:

բ) Խնամքով պահպանել խաչքարերը, որմնանկարները, քանդակներն ու վիմագիր արձանագրությունները, հետևել, որ նրանց վնաս չհասցվի:

գ) Պայքարել հուշարձանների պատերին գրոտելու և ինքնակամ պեղումներ կատարելու դեմ:

դ) Ակտիվ աջակցություն ցույց տալ հուշարձանների շինարարության, վերանորոգման ու վերականգնման աշխատանքներին (այն շրջաններում, որտեղ այդ կարգի աշխատանքներ կատարվում են):

ե) Ակտիվորեն աջակցել հուշարձանների պրոպագանդման գործին, կազմակերպել դասախոսություններ, վեկուցումներ, էքսկուրսիաներ, ֆոտո-ցուցահանդեսներ, կինոֆիլմերի ցուցադրումներ և այլ միջոցառումներ:

զ) Մրցանակաբաշխության մասնակից դպրոցը և այնտեղ սովորող աշակերտների ոչ պակաս քան 80 տոկոսը ընդգրկել պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության շարքերը:

3. Սահմանվում է տարեկան հինգ մրցանակ. մեկ առաջին կարգի մրցանակ 300 ռ. գումարով, երկու երկրորդ կարգի մրցանակ 200-ական ռուբլի գումարով, երեք երրորդ կարգի մրցանակ 100-ական ռուբլի գումարով:

Մրցանակաբաշխության արդյունքները ժյուրին ամփոփելու է 1971 թվականի դեկտեմբերի 30-ին:

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՊԵՏՇԻՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՎԵՐԱԿԱՆԳՆՄԱՆ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ

ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ՊԱՀՊԱՆՄԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ

«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ